

1917 № 18—ՄԱՅԻՍԻ 14 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արտաշարդեան հրապար. № 7.
Հեռախօս № 28.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



*«ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ի այն բաժանորդները, որ մինչեւ հիմա չեն վճարել թերթի 1917 թուի բաժանորդագինը, խնդրում ենք մինչեւ յունիսի 1-ն անյապաղ ուղարկել։*

## ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ ՁԱՅՆԸ ԿԸ ԲՈՂՈՔԷ

Համառուսական մեծ յեղափոխութեան առաջին օրերից սկսած Ռուսաստանի թէ Ժամանակաւոր Կառավարութիւնը իւր դիմումների մէջ ժողովուրդին և թէ ծայրայեղ քաղաքական կուսակցութիւնները միաբերան, բացարձակ և յամառ կերպով պնդում են, որ անհրաժեշտ է վերջ տալ արիւնահեղ պատերազմին, վերջ տալ մարդկային անողորմ ջարդերին. հարկաւոր է խաղաղութեան դաշն կապել։

Գերմանիան եւ համակիր է այս մտքին։

Շուտափոյթ խաղաղութեան կնքմանը ձայնակցում են և արտասահմանեան սոցիալ-դեմոկրատական կուսակցութիւնները։

Մօտ ապագայում Ստոկհոլմ քաղաքում կայանալու է այդ նպատակով համարեա բոլոր ազգերութիւնների յեղափոխական կուսակցութիւնների ներկայացուցիչների համագումարը, որտեղ քննութեան է առնուելու խաղաղութեան խնդիրը և որոշուելու են պայմանները։

Խաղաղութեան գաղափարը սկզբունքով անպայման համակրելի է և ընդունելի։

Պէտք է ողջունել նախաձեռնողներին։

Չի գտնուիլ ոչ ոք, որ սիրահար լինէր արիւնարբութեան, որ ցանկանար ստեղծել մարդկային արեան նոր ծովեր։

Յոգնել և ձանձրացել են պատերազմից ժողովուրդներ. յոգնել են զօրքերը խրամատների երկարատև և ծանր ու տաժանելի պայմաններից. սպառուեցին նիւթական միջոցները, քայքայուել է պարենաւորման գործը թէ պատերազմի ճակատում և թէ երկրների ներսում։

Այս դրութիւնը բացառիկ չէ, այլ ընդհանուր բոլոր կռուողների կողմից։

Ամենքի ջերմ ցանկութիւնն է պատերազմի դաշտից վերադառնալ խաղաղ կեանքի ու դիմել կուլտուրական և ստեղծագործական աշխատանքի։

Պատերազմը մեծ չարիք է, դուցէ երբեմն անխուսափելի։

Իսկ մարդկային իղձալն է խաղաղութիւն ու ստեղծագործութիւն։

Պատերազմը ժամանակաւոր և ստիպողական շեղումն է բնական կեանքի շաւղից, հետևապէս որքան շուտ կըռւող ժողովուրդները ազատուեն այդ չարիքից, որքան շուտ վերադառնան կեանքի իսկական ուղին, այնքան էլ մեծ բարիք կը լինի կատարուած երկու կողմերի համար։

Պատերազմի ամեն մէկ օրը խլում է հրբեմն հազարաւոր գեղեցիկ կեանքեր և առաջ է բերում տնտեսական հսկայական քայքայումն։

Միմիայն Ռուսաստանի ամենօրեայ պատերազմական ծախսերի գումարը հասնում է 50,000,000 ռ., իսկ այդ ծախսերը անկասկած ծանրանում են ժողովուրդի վրայ և երկար տարիներ ժողովուրդը տնքալու է մինչև, որ կառավարութիւնը կարողանայ հարկային և այլ զանազան միջոցներով ծածկել այդ տասնեակ միլիարդների հասնող ծախսերը։

Պատերազմին վերջ տալը, խաղաղութիւն կնքելը— բոլորի համար արդէն դարձել է բնական և շատ զգալի կարիք։

Այդ մասին խօսում են զօրքերի շրջաններում, ժողովուրդների բոլոր խաւերում. այդ խնդրով լուրջ կերպով զբաղուած են կառավարութիւնները. այդ միտքը ուժգին կերպով արծարծում է Ռուսաստանի և արտասահմանի մամուլը։

Այս բոլորը ցոյց է տալիս և համոզում, որ իսկապէս հասել է խաղաղութեան ժամը։

Սակայն որքան էլ հասունացած լինի պատերազմին վերջ տալու միտքը, այնուամենայնիւ կան հանգամանքներ, որ կարող են և պէտք է ստիպեն շարունակել պատերազմը, թէև պատերազմի շարունակելը լինի չափազանց ծանր կռւող կողմերի համար։

Այդ հանգամանքները հետևեալն են՝

Առաջին՝ որ հաշտութիւնը պատուաւոր լինի եւ ոչ թէ ստորացուցիչ, եւ

Երկրորդ՝ որ այս պատերազմի սկզբնական գաղափարը՝ ազատութիւն փոքր եւ ճնշուած ազգերին ու ժէրութիւններին—անպայման իրագործուի։

Հակառակ դէպքում հրդեհը չի մարուիլ։

Այս տեսակէտից մեր կառավարութեան և ծայրայեղ կուսակցութիւնների յայտարարութիւնները առայժմ ներշնչում են մեզ, հայերիս, յուսահատութիւն։ Նոյն յուսահատութիւնը ներշնչում է և Գերմանիայի կանցլերի վերջին յայտարարութիւնը։

Մեր ժամանակաւոր կառավարութիւնը և յեղափոխական կուսակցութիւնները լոզունգ են ընդունել՝ վերջացնել պատերազմը առանց անէքսիայի (հողային նուաճումի) եւ կոնտրիբուցիայի (դրամական տուգանքի հակառակորդից)։

Այս լոզունգից կարելի է ենթադրել, որ Ռուսաստանը պատրաստ է վերադարձնել Տաճկաստանին հին Հայաստանի նուաճած նահանգները առանց որոշ դրական պահանջների և ապահովութեան հայ ժողովուրդի համար։ Իսկ Գերմանիայի կանցլերը, ինչպէս հաղորդեցին լրագրերը, բացարձակ յայտարարել է, որ Հայաստանը պէտք է վերադարձուի Տաճկաստանին։

Եթէ իսկապէս մտադրութիւն կայ պատուով վերջացնել պատերազմը, այն ժամանակ ամբողջ հայ ազգը կը ցնցի։

Մի՞թէ կարելի է ենթադրել, որ Ռուսաստանի ազատութեան օրերին իրագործուի ցարիզմի հլու-հպատակ և չարագործ նախարար Լոբանով Ռոստովսկու յանդուգն քաղաքականութիւնը՝ «Հայաստանն առանց հայերի»։

Մի՞թէ խեղճ հայ ազգի դարաւոր հաւատն ու յոյսը դէպի Ռուսաստան պէտք է վերջանայ նրանով, որ իբր կատարուել է պատմական սխալմունք հայ ազգի կողմից։

Մի՞թէ հայ ժողովուրդը արիւնաքամ եղաւ, հարիւր հազարաւոր զոհեր տուեց Ռուսաստանի աջակցութեան համար, որպէս զի այդ ժողովուրդը խաղաղութիւնը կընքելիս մոռացուի ու մնայ զուրկ իւր հայրենիքից, և թափառի թշուառութեան մէջ օտար երկրներում։

Մենք դժուարանում ենք հաւատալ, որ խնդիրը այդ ելքը ստանայ և տեղի ունենայ մի այսպիսի սոսկալի իրողութիւն։

Հայաստանի արիւնոտ քարերն անգամ կը բողոքեն այդ տեսակ և անսասանելի դրութեան դէմ։

Մենք դեռ չենք կորցնում մեր յոյսը, որ Ռուսաստանի նոր կառավարութիւնը և այժմ Ռուսաստանի քաղաքական կեանքը ղեկավարող յեղափոխական կազմակերպութիւնները կը համարեն իրենց սրբազան պարտականութիւնը՝ դնել հաշտութեան սեղանի վրայ և Տաճկահայաստանի խնդիրը նրա քաղաքական վիճակի մասին։

Հայաստանը իւր հայ ժողովուրդի հետ վերջնականապէս պէտք է ազատուի տաճկական լծի տակից եւ ստանայ ինքնավար քաղաքական կեանք։

Այդ է պահանջում պատուի և պարտականութեան զգացմունքը. այդ է պահանջում և քաղաքական իմաստութիւնը հենց Ռուսաստանի շահերի տեսակէտից Արևելքում։

Ազատ Ռուսաստանը մի կողմից հնարաւորութիւն կը տայ հայ ժողովուրդին ազատուել կործանումից, ապրել, զարգանալ ու տարածել Ասիայում եւրոպական կուլտուրա, քաղաքակրթութիւն, իսկ միւս կողմից նա կը լինի մի պատնէշ Ռուսաստանի համար արևելեան պետութիւնների արշաւանքների դէպքում։

Այս է թելադրում մարդկային խիղճը, քաղաքական իմաստութիւնը և պետական շահերի ըմբռնումը։

Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

---

# Համաշխարհային պատերազմ

*Ռուսաց արեւմտեան ճակատ.*-- Վերջին շաբաթուայ ընթացքում տեղի են ունեցել առաջապահ զօրամասերի ընդհարումներ միայն։

*Կովկասեան ճակատ.*— Թիւրքերի մի զօրագունդ, Արտուինից արեւմուտք, փորձեց ռուսաց խրամատների վրայ յարձակուել, բայց յետ մղուեց. նոյնպէս Բանայից հարաւ Թիւրք հեծելազօրքի մի խումբ ուզեց մօտենալ Բանայից 14 վերստ հարաւ գտնուող բարձունքներից մէկին, բայց յետ շպրտուեց։

*Ֆրանս-անգլիական ճակատ.*— Սանսից հիւսիս գերմանացիները նախապատրաստական կրակից յետոյ՝ յարձակուեցին և տեղի ունեցաւ մեծ ճակատամարտ. գերմանացիք խոշոր կորուստներ կրելով յետ վանուեցին. նրանց ձեռքին մնաց միայն Սերնիից հիւսիս-արեւելք մի հողամաս։ Անգլիական ճակատում եւ գերմանացիք յարձակումներ են գործում, բայց նրանց չի յաջողւում պատռել բրիտանական ճակատը։ Պէտք է նկատել, որ թշնամին միւս ճակատներից խոշոր քանակութեամբ զօրքեր է փոխադրել ֆրանս-անգլիական ճակատը, դաշնակիցների յաղթական յառաջխաղացութիւնն արգիլելու համար։

*Իտալական ճակատ.*— Վերջին շաբթուան ընթացքում կռիւները աշխոյժ կերպարանք ստացան։ Գորիցայից հիւսիս իտալացիք յարձակում գործեցին և առան 254 գերի։

*Միացեալ-Նահանգները* մեծ պատրաստութիւն են տեսնում պատերազմի համար. արդէն պատրաստուած է կամաւորների 139,000-նոց մի բանակ, որ պիտի փոխադրուի Ֆրանսիա։

*Ծովային պատերազմ.*— Մայիսի 7-ին ֆրանսական 4 ականակիրներից բաղկացած մի հետախոյզ խումբ Դիւնկերքի մօտ հանդիպեց գերմանական հակաականակիրների մի նաւաբաժնի։ Տեղի ունեցաւ երկարատեւ ծովամարտ. թշնամի նաւաբաժինն ամենամեծ արագութեամբ հեռացաւ, ֆրանսական ականակիրներից մէկը աննշան վնասներ կրեց։

# Ներքին Տեսութիւն

## „ՀԱՅԿԱԶԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ"

### ԱՌԹԻՒ

«Հայկազեան Ընկերութիւն» անունով մի նոր հաստատութիւն է աւելանում Թիֆլիսում մեր ազգային-կուլտուրական ընկերութեանց կողքին։

Ամեն մի նոր ընկերութեան կարեւորութիւնը և յաջողութիւնը կազմուած է նախընթաց համանման ընկերութեանց նպատակների իրագործումից և ընկերութեան անդամների և կամ հասարակ հասարակութեան նոյն նպատակին ծառայելու ձըգտումից։

Մեր հնագոյն ազգային-կուլտուրական ընկերութիւնը՝ «Բագուի Մարդասիրական Ընկերութիւնը» և նորագոյնը՝ «Կ. Հ. Բարեգործական Ընկերութիւնը» ցարդ աշխատել են ի քաղաքակրթականին բանալ դպրոցներ և օգնել հայոց միջնակարգ դպրոցաւարտներին բարձրագոյն ուսումն ստանալու։ Վերջին գործում պակաս դեր չեն խաղացել և Ներսիսեան դպրանոցն ու Էջմիածնի Գէորգեան Ճեմարանը մեր հարուստների կտակած գումարներով։ Պակաս չէ թիւը և հայ մեկենասների, որոնք սկսեալ հանգուցեալ Սանասարեանից մինչև Մանթաշեան, Ժամհարեան, Մելիք-Ազարեան և այլն իրենց կենդանութեան ժամանակ նպաստեցին բարձրագոյն կրթութեան հայ պատանիների, որոնք մեր դպրոցական, գրական և հասարակական կեանքում գործել և դեր են կատարում։ Իսկ վերջերս հայ հարուստներն աւելի ձգտեցին ժողովրդական-տարրական դպրոցների թիւը բազմացնել, մանաւանդ Կ. Հ. Բ. Ը-թեան ձեռքով։ Եղել են բարերարներ եւ, որոնք միջնակարգ և բարձրագոյն դպրոցներ են հաստատել, ինչպէս Սպարթալեան, Սանասարեան և Լազարեանք։ Իսկ ռուսահայութիւնը իւր եկեղեցիներով հիմնել է մի քանի դպրանոցներ և Էջմիածնի Ճեմարանը։

Ընդհանուր առմամբ ուրեմն հայ ժողովուրդը իւր հարուստներով և եկեղեցով քաջալերել է ուսումը, գլխաւորապէս դպրոցներ բանալով. բայց չէ կարողացել տակաւին ոչ թէ ընդարձակել, այլ և ապահովել իւր գոնէ բոլոր դպրոցների գոյութիւնը, էլ չեմ խօսում ուսուցիչների ապահովութեան մասին, որի համար միայն խօսում է, եթէ ի նկատի չառնենք Կ. Հ. Բ. Ը-թեան տարեկան մօտ 2500 ռ. նպաստն և մի քանի անհատական և մասնաւոր դէպքեր։

Գրականութեան համար էլ, որ գլխաւորապէս զարգացել և զարգանում է լրագրութեամբ, բացի ընդհանրապէս մասնական ջանքերից՝ մասնաւոր հրատարակիչներ ու գրավաճառանոցներ, կան և հաստատութիւններ, որոնց մէջ նշանաւոր դեր է կատարել Թիֆլիսի Հրատարակչական Ընկերութիւնը լայն ծրագրով։

Հայ Գրողների դեռահաս ընկերութիւնը դեռ նոր-նոր է սկսում օգնութեան հասնել կարօտ հայ հեղինակներին, թէև տարեկան մի համեստ գումարով, որից սակայն աւելին սպասելն շատ դժուար է։

Ձնայելով այս ջանքերին, Հայոց մէջ կարելի է ասել ոչ մի հեղինակ, թէկուզ անուն ունեցող և շատ կարդացուող հեղինակ, օր. Րաֆֆի, Լէօ, Ահարոնեան, Շիրվանզադէ, Յ. Թումանեան, Յ. Յովհաննիսեան և այլն, չեն կարողացել միմիայն իրենց գրչով ապրել առանց կողմնակի աւելի կամ նուազ աշխատանքի։ Աւելորդ է երկար խօսել և մեր հրապարակախօսութեան մասին, քանի որ լրագրութիւնը ցարդ միայն բաց է ունեցել սակաւաթիւ բաժանորդների պատճառով։ Նոյն իսկ այսօր, երբ շնորհիւ հանգամանքների մեծ զարկ է ստացել լրագրութիւնը, «Հորիզոնն» է, մեր իմանալով, և այն էլ միայն վերջերս, որ բաց չունի։

Աւելի լաւ չէ հայ գեղարուեստի դրութիւնը. հայ նկարչութիւնը, երաժշտութիւնը, ճարտարապետութիւնը, որոնց գոյութիւնն անգամ շատ ժամանակ չէ որ հաստատուած է, այլև հայ թատրոնը դեռ մանկական քայլեր են անում, ուրեմն առանձին գուրգուրանքի առարկայ պիտի դառնան, որպէս զի կարողանան հաստատուն քայլեր անել և զարգանալ։ Ձնայելով որ մխիթարական նշաններ են երեւում, հիմնուեց Հայ Գեղարուեստագէտների Ընկերութիւն։ Հայոց Դրամատիկ Ընկ.-ը ջանքեր է թափում Թիֆլիսում առանձին ազգային թատրոնական շէնք կառուցանելու են. սակայն և այնպէս հայ գեղարուեստը կարօտ է առանձին քաջալերութեան և խնամքի։

Գալով հայագիտութեան՝ պէտք է ասել, եթէ մի կողմ թողնենք Վենետիկի և Վիէննայի Մխիթարեանց գիտական միաբանութեանց ականաւոր, մանաւանդ հանգուցեալ անդամներին, զարգանում է գլխաւորապէս օտար հայագէտների ձեռքով, շնորհիւ այն հանգամանքի, որ եւրոպական բարձրագոյն դպրոցներում կան հայագիտական ամբիոններ։

Մինչդեռ մեր երկրում կարելի է մատներով համրել այդպիսիների թիւը, մանաւանդ այնպիսիներինը, որոնք իրենց գիտական ուսումնասիրութիւնները գրում են հայերէն, ուրեմն հայագիտութեան հետ միաժամանակ զարգացնում են հայագիտական գրականութիւնը մայրենի լեզուով, որ առանձին կարեւորութիւն պիտի ունենայ մեզ համար։

Այս հայագէտների համար կարելի է համարձակ ասել, որ ոչինչ չէ արուած, եղած երկու մրցանակներն էլ, Յովսէփ Իզմիրեանինը Կ. Պոլսում և Աւետիք Ղուկասեանինը—մի մի կաթիլ են կարիքի անհուն ծովում։ Ուստի և հասկանալի է որ հայերէն գրող հայագէտներ կարող են լինել և ապրել գլխաւորապէս Վենետիկի, Վիէննայի և Էջմիածնի նիւթապէս ապահովուած հայ կրօնաւորներից և մասամբ միայն Գէորգեան Ճեմարանի ուսուցիչներից։

Այս այսպէս լինելով և մեր կրթական և քաղաքական վիճակն ի նկատի առնելով պէտք է զարմանալի չլինի, որ հայ ժողովրդի մէջ շատ սակաւաթիւ են հայագիտական գրուածքների ընթերցողների թիւը, ուստի և հասկանալի է թէ ինչու մնանում այս կամ այն վաստակաւորի մասնագիտական-հայագիտական գրուածքներն անտիպ են մնում, իսկ հեղինակները անյայտ կամ թագնուած և յուսահատ։

Հայ ազգը կարելի է ասել բոլորովին բարձի թողի է արել և հայ գեղարուեստը և մանաւանդ հայագիտութիւնը, որոնցով զբաղուող մշակների խոշորագոյն մասը դարձել ուսուցիչներ են։ —Ո՛չ, հայ հասարակութիւնը երբեմն յիշում է այս կամ այն ճիւղի ներկայացուցչին և յոբելեան կատարում օգնելու նրան, երբ գուցէ արդէն ուշ է։ Ի հարկէ թերևս ուշ չէ վաստակաւորի ծերութիւնն ապահովել. բայց ոչ ապաքէն հասուն հասակի ապահովութիւնը պիտի նպաստէր աւելի արդիւնաւէտ և վաստակաւոր գործունէութեան ի նպաստ հայ գրականութեան, գեղարուեստին և հայագիտութեան։

Եւ մեր հայ բարերարները և ազգային-կուլտուրական հաստատութիւններն աւելի ազգօգուտ գործ կատարած կը լինէին, երբ նպաստէին յուսատու գրականագէտների, հեղինակների, բանաստեղծների, գեղարուեստագէտների, գիտնականների և այլն։ Այստեղ եղած օժանդակութիւնը գրաւական ունի, որ ապարդիւն չի կորչիլ օժանդակութիւնը, մինչդեռ ուսանողութեան օժանդակութեան գործում այս դրական հաւաստիքը չկայ, այլ *) միայն յոյս։ Այս բոլորից հետևում է, կրկնում ենք, որ մեր գրականութիւնը, գեղարուեստը և մանաւանդ հայագիտութիւնն աւելի կամ նուազ չափով կարօտ են քաջալերութեան և պաշտպանութեան։

Մեր կեանքի այս պակասը յանձն է առնում լրացնել Հայկազեան Ընկերութիւնը։

Տեսնենք։

ՍԿԱՅ

*) Մենք ի հարկէ բնաւ դէմ չենք կարող լինել յուսատու, աղքատ ուսանողներին օժանդակելու՝ բարձրագոյն կրթութիւն ստանալու, մանաւանդ որ այսպիսիներից է կազմուելու ապագայ հայ քաղաքակրթութեան սպասաւորների քանակը։ Այստեղ խնդիրը գերադասութեան մասին է։

---

## ՎՐԱՑ ԱԶԳԱՅԻՆ-ԴԵՄՈԿՐԱՏԻԿ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱՅԻՆ ԾՐԱԳԻՐԸ

Վրաց ազգային-դեմոկրատիկ կուսակցութիւնը հրատարակել է մի ծրագիր, Վրաստանի ինքնավարութեան մասին, որից քաղում ենք միայն ազգային-քաղաքական պահանջները։

### ԱԶԳԱՅԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Ազգի նիւթական, հոգեկան և ֆիզիքական ամրապնդման համար անհրաժեշտ է քաղաքական ազատութիւն։

Ազգային ոյժերի զարգացումն ու ամրապնդումը՝ ազգի քաղաքական իրաւունքներին հասնելու ուղիղ ճանապարհն է։

#### Վրաստանի ազգ. իրաւունքները

Վրաց ազգը շատ տարիների ընթացքում ապրել է ազատ պետական կեանքով։ 1783 թ. դաշնագրով Վրաստանը Ռուսաստանի խնամակալութեան տակ մտաւ։ Ըստ այդ դաշնագրի՝ Վրաստանը պէտք է պահպանէր իւր սեփական օրէնսդրութիւնն ու կառավարութիւնը, սեփական գանձարանը, դատարանը, եկեղեցին։ 1801 թ. սեպտ. 15-ի հրովարտակով Ռուսաստանը խախտեց Վրաստանի հետ ունեցած դաշնագիրը և բոլորովին վերացրեց վրաց ազգի պետական իրաւունքները։ Վրաստանի քաղաքական իրաւունքները պէտք է վերականգնուեն։

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

Պետական վարչութեան կարգը և քաղաքացիների իրաւանց փոխ-յարաբերութիւնները պէտք է համապատասխանեն ազգի պետական և կուլտուրական զարգացման, բնութեան և աւանդութիւններին։

ա. Վրաստանի քաղաքական ինքնավարութիւն (աւտօնոմիա).

1) Վրաստանի քաղաքական աւտօնոմիան պէտք է անյապաղ վերականգնել դեմոկրատիկ հասարակապետութեան սկզբունքների վրայ։

2) Ինքնավար սահմանադրութիւնը մշակում է Թիֆլիսում հաւաքուած վրաց ազգ. ժողովը։

3) Ազգ. հիմնադիր ժողովի ընտրութիւններին մասնակցում է իւրաքանչիւր կատարելահասակ քաղաքացի՝ առանց սեռի, դաւանութեան և ազգութեան խտրութեան՝ ընդհանուր, հաւասար, ուղիղ և գաղտնի քուէարկութեամբ։

4) Վրաց ինքնավար օրէնսդրութեանն ու վարչութեանն են վերաբերում Վրաստանի սահմաններում ապրողների բոլոր գործերն ու խնդիրները, բացի՝ ա) պատերազմի և խաղաղութեան, բ) արտաքին քաղաքականութեան և գ) Ռուսաստանի հետ ընդհանուր պետական բիւջէի հարցերը, որոնք վերաբերում են Ռուսաստանի հետ միաբան օրէնսդրութեան իրաւասութեանը։

Ծանօթ.—Վրաց զօրքը (միլիցիա) խաղաղ ժամանակ զինուորական ծառայութիւնը կատարում է հենց տեղում՝ Վրաստանում։

5) Ինքնավար կառավարութիւնը տարածւում է ամբողջ Վրաստանի վրայ։

6) Վրաստանը կազմում են՝ Թիֆլիսի և Քութայիսի նահանգները, Բաթումի շրջանը, Զաքաթալայի, Արդահանի և Օլթիի վիճակները, Սօչիի շրջանի մի մասը (Սև ծովեան նահանգ) և մօտերս գրաւուած Թիւրքական Վրաստանը՝ Իսպիրը, Թորթումը և Լազիստանը։

Ծանօթ.—Այդ վայրերում ապրող օտարազգիների ազգային կուլտուրական իրաւունքը պաշտպանւում է ինքնավար Վրաստանի հիմնական օրէնքներով։

---

## Գաւառ

Սեւքար, 28 ապրիլ.— Ազատութեան պտղի քաղցրութիւնից շրջանիս գիւղերը շատ քիչ են ճաշակում. Նրանց շատ քիչ մասն է հասնում այդ մեծ արքայութիւնից, դրախտից։ Թանկութիւնը առաջուանից մի քիչ էլ աւելի է. ալիւրը, մինչ մօտ ժամանակներս պուդը 6 ռ. էր, իսկ այսօր 7 ռուբ. 30 կոպ. է ծախւում, այն էլ դառն և անտանելի։ Ստանում են ալիւր Քարվանսարայի բանկի միջոցով, պուդը $4\frac{1}{2}$—5 ռ., այն էլ շատ քիչ։ Այն ալիւրը, որ սրանք ստանում են այդ գներով, Ուզունթալան, Սեւքարի հանդէպ գիւղը, ստանում է 3 ռ. 60 կոպ. իւր բանկի միջոցով։ Այդ գիւղը Սեւքարի կէս մասի մեծութիւնն ունի և գտնւում է դէմ առ դէմ։

Այս շրջանի գիւղերը (7 գիւղ) ապրում են Քարվանսարայի ողորմութեամբ։ Նրանց թէ ալիւրը և թէ շաքարը անցնում է իրանց դռնով դէպի հարաւ 20 վերստ, ուր Քարվանսարան է և այնտեղ մի առ ժամանակ իւր հանգիստը առնելուց յետոյ նոր դառնում է շրջանիս գիւղերը։ Շնորհակալութիւն Քարվանսարայի նոր երիտասարդութեան, որոնք իրենց գլուխ ունենալով պ. Խո

րէն Երիցեանին, այդ շրջանը մի որոշ բարձրութեան վրայ դրին և տուին ժողովրդին ապրելու յարմարութիւններ։

Այս շրջանի տանուտէրները միշտ եղել են դժբախտաբար կամ խաւարամիտ կամ մի մի Նիկոլայ, որոնք պահել են ժողովրդին գրատների տեղ։ Երիտասարդութիւնը զզուած թողեց գիւղերը և հեռացաւ քաղաքները, Բագու, Բաթում, Թիֆլիս, թողնելով հայրենիքը։ Սեքարում մի տարի է բանկ բանալու իրաւունք է տրուել Սարգիս Ասիրեանի աշխատութեամբ, բայց տակաւին գլուխ չեկաւ։

Նոր կառավարութեան անդամներ ընտրուել են սուգիաները։

Մ. ՏԷՐ-ԳԷՈՐԳԵԱՆ

## Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

—Նիկոլայ Կուզաշից հանգ. Մ. Բոզարջեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ փախստական-որբերի 100 ռ.։

—պ. Լիպարիտ Մելիք-Սարգսեանից յօգուտ Միրանաւորի որբանոցի 25 ռ.։

—պ. Կարապետ Շիրինեանից Աբէլ Յակոբեանի երեխայի մկրտութեան կնքահայրութեան առթիւ նուէր տալու փոխարէն, յօգուտ Շիրինեան գրադարանի 25 ռ.։

—Тифл. Лист.-ի խմբ. միջոցով, Գ. Դաւթեանից ի յիշատակ հանգ. Ս. Դաւթեանի յօգուտ փախստականների 100 ռ.։

—Кавк. Слово-ի խմբ. միջոցով Յարութիւնեանից 5 ռ. և Նասիբեանից 10 ռ., ընդամենը 15 ռ. յօգուտ փախստականների։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ

1. Փախստականների գործով զբաղուող գլխաւոր լիազոր գեն. Վ. Մ. Թամամշեանը առաջարկել է ցուցակագրութեան ենթարկել ամբողջ գաղթականութիւնը։ Այդ առթիւ առաջարկուած է ներկայացնել նախահաշիւ այդ գործը կազմակերպելու համար։

2. Ցարսկիէ-Կոլոդցում, Ախալցխայում մտադրութիւն կայ Կոմիտէիս որբանոցներն ընդարձակելու. այդ առթիւ կարգադրուած է վարձել նոր բնակարաններ։

3. Կոմիտէիս «Մի բաժակ թէյ»-ը ապրիլ ամսուայ ընթացքում մուտք ունեցել է 11615 ռ. 57 կ., ելք՝ 7350 ռ., զուտ արդիւնք՝ 4264 ռ. 78 կ.։

4. Էրզրումի որբանոցը կարգադրուած է փոխադրել կամ Ախալցխա և կամ Ցարսկիէ-Կոլոդցի։

## Քրոնիկոն

Ստեփան Կանայեանցը ամսից 14-ից հեռանալով «Համբաւաբեր»-ի խմբագրութիւնից, խնդրում է իր անձնական նամակները չուղարկել այլևս խմբագրութեան, այլ իր բնակարանի հասցէով՝ Ольгинская ул. № 37.

—Ներսիսեան դպրոցի տեսուչ է ընտրուած Սեդրաք Աւետեանը։

—Կովկասեան ջերմուկային (կուրորտ) առաջին համագումարը բացուեց մայիսի 7-ին Քաղ. Դումայի դահլիճում, իսկ Արտիստական այգում բացուած է ցուցահանդէսը։ Համագումարին մասնակցելու համար պատգամաւորներ են եկել Կովկասի ջերմուկներից ու քաղաքներից։ Համագումարի նիստերը կը վերջանան մայիսի 10-ին, իսկ ցուցահանդէսը մինչև մայիսի 14-ը պիտի շարունակուի։ Դրաւոր զեկուցումների թիւը հասնում է մօտ 100-ի։ Ի միջի այլոց զեկուցումներ կարդացին իշխանուհի Մ. Թումանեանը Աբասթումանի, իսկ պ. Ս. Յարութիւնեան և բժ. Մելիք-Նուբարեանը Դիլիջանի մասին։

Պ. Ս. Յարութիւնեանի զեկուցումը պարունակում է իւր մէջ մի ընդարձակ ծրագիր՝ Դիլիջանը մի օրինակելի ջերմկանոց դարձնելու համար։ Այդ ծրագրով պահանջւում է մօտ 2,500,000 ռ. ծախս, որը ըստ զեկուցողի պէտք է պետ. գանձարանը յանձն առնի հոգալու։

Համագումարը միաձայնութեամբ հաւանեց պ. Ս. Յարութիւնեանի 12 կէտից բաղկացած տեղեկագրին և ցանկութիւն յայտնեց, որ Դիլիջանը, որպէս հրաշալի բնութիւն ունեցող մի վայր, շուտով դառնայ մի օրինակելի ջերմկանոց։

— Գաղթականութեան կովկասեան բաժնի պետ. կազմը վերակազմելու համար, կովկ. կոմիսարիատի առաջարկութեամբ՝ կազմուել է մի մասնաժողով՝ պ. Ս. Յարութիւնեանի նախագահութեամբ։ Մասնաժողովին յանձնարարուած էր մշակելու ծրագիր։ Այդ առթիւ տեղի ունեցան մի քանի նիստեր։ Վերջին նիստը կայացաւ մայիսի 9-ին Պետ. Դումայի անդամներ Մ. Պապաջանեանի և Ջափարովի մասնակցութեամբ։ Երկար վիճաբանութիւնից յետոյ մասնաժողովը միաձայն որոշեց, բոլոր ազգութիւնների գաղթ. մարմիններից, քաղաքների ու զեմստվային ներկայացուցիչներից՝ հինգական հոգի հայերից, վրացիներից ու թիւրքերից, հինգ հոգի էլ ռուսներից (այս վերջին հինգ հոգու մէջ են մտնում քաղաքների, զեմստվոյի և լեհացիների միութեանց մէկական, իսկ ռուս հասարակութիւնից երկու ներկայացուցիչները) մի ղեկավարող մարմին ընտրել։ Այդ մարմնի մէջ ներկայացուցիչներ կունենան նաև գաղթական հայեր, վրացիներ (աջարացի) և թիւրքեր։

Խորհուրդը բաղկացած կը լինի 23 անդամից. Նա իւր միջից կընտրէ նախագահին, բիւրօ կամ կոմիսարներ՝ խորհրդի որոշումները ի կատար ածելու։ Ազգային հաստատութիւնները ներկայացնում են առանձին իրենց նախահաշիւները և այդ տեսակէտից իրենց ներքին գործերում վայելում են ինքնավար իրաւունքներ։

— Անդրկովկասին կից գործող շրջան. խորհրդակցութիւնը՝ ազգային ներկայացուցիչներից կազմուած, վերջացնելով մի շարք օրինագծեր, ինչպէս է նահանգական, գաւառական, շրջանային և գիւղական գործադիր մարմինների պոլոժենին, այժմ անցել է միջնակարգ և ստորին ուսումնարանները ազգայնացնելու խնդրին։

— Ներքին գործերի մինիստրութիւնը հեռագրով հաղորդել է Անդրկովկ. առանձին կոմիտէին, որ ժամանակաւոր կառավարութիւնը հաստատել է քաղաքային ինքնավարութեանց իրաւասութիւնների նոր ընտրութիւններ կայացնելու օրինագիծը։ Ընտրութիւնները լինելու են քառանդամ եղանակով, առանց դաւանանքի և սեռի խտրութեան, սկսած 20 տարեկանից։ Ընտրողների և ընտրողուհիների ցուցակներում մտնելու են բոլոր բնակիչները, որոնք ցուցակը կազմելիս կը գտնուեն տեղերում։ Ընտրական բոլոր իրաւունքներից օգտւում են նաև զինուորական ծառայութեան մէջ գտնուածները։ Ուստի մինիստրութիւնն առաջարկում է անյապաղ անցնել ընտրութիւնների ցուցակները կազմելուն։ Այս հեռագիրը Անդրկովկ. առանձին կոմիտէն ուղարկել է շրջանի բոլոր գործադիր կոմիտէներին։

— Նպաստամատոյցի ընդհ. ժողովը.—Մայիս 5-ին, երեկ. ժամը 8-ին Քաղ. Դումայի դահլիճում կայացաւ Նպաստամատոյց ընկ. ընդհանուր ժողովը նախագահութեամբ Յ. Սպէնդիարեանի։

Ներկայ էին 17 հոգի, վարչութեան 10 անդամից՝ 4 հոգի։ Հաշիւների մասին զեկուցում տալուց յետոյ՝ վերստուգիչ յանձնաժողովի կողմից Ա. Նազարէթեան իւր դիտողութիւնների մէջ նկատեց, որ վարչութեան անդամներից Ս. Մալխասեան, Ա. Աթանասեան և Գ. Վարդանեան պաշտօններ են վարել ռոճիկներով։ Այս երևոյթը գտնում է տգեղ և ապօրինի։ Հ. Առաքելեանը արդարացնում է վարչութեանը՝ առարկելով, թէ ազատ մարդիկ չեն եղել, որ հրաւիրուէին Ս. Մալխասեանի, Ա. Աթանասեանի և Գ. Վարդանեանի ստանձնած պաշտօնների համար։ Այս առարկութիւնը չի ընդունւում՝ ստանում է 2 ձայն միայն։ Մնացած 15 հոգին գտնում են ապօրինի, ոչ միայն էտիկայի տեսակէտից, այլ և կանոնադրութեան, որի վարչութեան վերաբերեալ յօդուածներից երևում է, որ այն պարտականութիւնները, որոնք այժմ կատարւում են ռոճիկով, վարչականները պէտք է կատարէին իբրև վարչութեան անդամ։

Առաջարկւում է նոր վարչութիւն ընտրել։ Մալխասեանը յայտնում է, որ ինքն էլ զգում էր թէ պէտք է այդպէս բան չլինէր, սակայն կանոնադրութեան մէջ յատուկ յօդուած չլինելով՝ ստանձնել էր համ ռոճիկով պաշտօն, համ վարչութեան անդամութիւնը։ Առաջարկում է ընտրութիւն կայացնել, որից յետոյ ինքը կասէ իւր վերաբերմունքը թէ ո՛ր պաշտօնին կը մնայ։

Ժողովականները չեն ընդունում այդ պայմանը։ Վերջը Մալխասեանը, որ ընկերութեան որբանոցի հիմնումից սկսած կատարում էր ռոճիկով կառավարչի պաշտօն, հրաժարւում է։

Վարչութիւնն ընտրութիւն չի կատարում, մասամբ այն պատճառով, թէ պէտք է հարցնել նաև վարձու վարչականներ քաղաքից բացակայող Գ. Վարդանեանի և Ա. Աթանասեանի կամքը, թէ ո՞րն են գերադասում վերապահել իրենց՝ վարչութեան անդամ լինե՞լը, թէ՞ ռոճիկով պաշտօն ունենալը։ (Հորիզոն)

—Ռուսահայոց համագումարը.—Միջկուսակցական խորհրդակցութիւնը կազմել է ռուսահայոց համագումարի կանոնադրութիւնն ու հրահանգը. 10.000-ից կընտրուի մի պատգամաւոր, որոնց ընդհանուր թիւն է 195։ Ընտրութիւնները լինելու են մի օրում, յունիսի 18-ին, իսկ համագումարի բացումը յուլիսի 2-ին։ Համագումարի տեղը—Երևան թէ Թիֆլիս—տակաւին անորոշ է։

Հայ ժողովրդական կուսակցութիւնը, որ ընդհանուր պետական խնդիրներում ընդունել է ռուս կադէտների ծրագիրը, բայց ունի իւր ազգային ծրագիրը, արդէն կազմակերպուել է։ Կազմուած ժամանակաւոր բիւրօն կիւրակի, մայիսի 9-ին, ընտրեց դիւան (պրեզիդիում) նախագահ Լևոն Ղուլեան, փոխ-նախագահներ Յ. Փիրալեան և Հ. Առաքելեան, քարտուղար Ս. Մալխասեան և գանձապահ Ա. Քալանթարեան։

— Հայ Գրողների ընդհ. ժողովը տեղի ունեցաւ ապրիլի 30-ին և մայիսի 3-ին՝ քաղաքային խորհրդարանի դահլիճում՝ նախագահութեամբ Մ. Աբեղեանի և քարտուղարութեամբ Ս. Եսայեանի։

Վարչութեան նախագահ Յ. Թումանեանի զեկուցումից երևաց, որ վարչութիւնը որոշել է հրատարակել «Դիւան հայ գրականութեան» տարեկան 2 հատոր, որի համար ստացուած է 2000 ռ., այլ և նախագծել է հրատարակել զուտ գրական թերթ։

Երկար խորհրդակցութիւնից յետոյ ժողովը հաստատեց այդ՝ յանձնարարելով վարչութեանը առայժմ թանկութեան պատճառաւ ըստ հանգամանքների հրատարակել Դիւանը և իւր սեփ. թերթը։ Ժողովը ցանկութիւն յայտնեց, որ այսուհետև դասախօսութիւնները լինեն սիստեմով, լինեն և դասախօսութիւններ անդամների համար ընկերական հաւաքոյթներում, այլև կազմել միջնակարգ և բարձր գրականութեան դասընթացքներ։

Ընդունուեց և ընդունակ որբերին որդեգրելու առաջարկը։ Վարչութեան անդամների ընտրութիւնը յետաձգուեց, մինչև որ վարչութիւնը ժողովից ընտրուած մասնաժողովի (որի անդամներն են Ս. Տիգրանեան, Մ. Աբեղեան և Ն. Սարգսեան) հետ միասին կը կատարեն կանոնադրութեան փոփոխութիւնը։

—Շուտով հրատարակուելու է մեր ականաւոր ճարտարապետ Թորոս Թորամանեանի «Հայկական ճարտարապետութիւն» երկհատորը, որ բովանդակում է ոչ միայն բուն հայկական ճարտարապետութեան զանազան շրջանները մինչև Բագրատունիք և ԺԳ. դարը, այլ և նախահայկական շրջանը՝ սկսեալ ամենահին ժամանակներից։

Գործը երկու մասից է բաղկացած—բնագիր և շքեղ ալբոմ—300 նկարներից բաղկացած։ Բնագրում պիտի լինին բազմաթիւ բացատրական նկարներ և յատակագծեր։

Գործի հրատարակութիւնը յանձն է առել Մարտին Գրիգ. Յակոբեանը։

# Արտաքին տեսութիւն

## Պ. Ա. ԿՐԱՊՈՏԿԻՆԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ *)

Ի՞նչ է գրուած գերմանական կայսրութեան դրօշակի վրայ, արդեօք ազգերի ազատութեա՞ն, խաղաղութեա՞ն իղձը, յառաջադիմութեա՞ն։ Բնաւ ո՛չ։ Այդ դրօշակը խոստանում է միմիայն պատերազմ, որ նոր պատերազմների դրաւական միայն կարող է լինել։ Կենտրոնացած զինուորական պետութիւն, ժողովրդի հըպատակութիւն զինուորական ռէժիմին, որի մարմնացումը ինքը Վիլհելմն է, որ ինքն իրեն Աստուծոյ պատիժ, Աթիլլա է անուանում։ Աշխատեցէք իրօք երևակայել թէ ի՞նչ կը նշանակէր Գերմանիայի յաղթութիւնը այս պատերազմում։ Բելգիայի ամբողջական կամ մեծ մասի նուաճումն, այսուամենայնիւ Գերմանիայի ամրացումն Անտվերպէնում և գուցէ Կալէ։

Ստիպողական միացումն Հոլանդիայի Գերմանիային։ Շվեցարիայի միացման վտանգը, որի դէմ այլևս չեն կարող կռուել Ֆրանսիան և Անգլիան։ Գերմանիան կը միացնէր Ֆրանսիայի մի մասը (Շամպանիան և հիւսիսային ափերը), այսինքն գերմանական ամրութիւնները կը մօտենային Պարիզին մի օրուայ կամ երկօրեայ հեռաւորութեամբ և կարգիլէր, որ սրանց դէմ Ֆրանսիան ամրանար։

Սոսկալի մեծ տուգանք կառնէր (կոնտրիբուցիա), որ կը ծախսուէր գերմանական զօրքի և նաւատորմիղի զօրեղացման համար։ Դեռ Բիսմարկը ափսոսում էր, որ հինգ միլլիարդի տեղ տասնևհինգ միլլիարդ չպահանջեց 1870 թուին։ Վերջապէս Ֆրանսիան կը վերածուէր երրորդական պետութեան, որ չէր համարձակուի մի քայլ անելու սոցիալական զարգացման համար, որովհետև Գերմանիայի միջամտութիւնը միշտ պիտի սպառնար նրան։ Վերջին բոլոր ժամանակ այս դրութեան մէջ էր Բելգիան։ Նոյն դրութեան կը հասնէին Ֆրանսիան և Անգլիան։ Այժմ, երբ գոյութիւն ունեն հազարաւոր զինուոր տեղաւորող նաւեր, երբոր զինուած ույժի ֆակտոր են դարձել ստորջրեայ և օդային նաւերը՝ Անգլիայի անձեռնմխելիութեան մասին այլևս խօսք չի կարող լինել։ Այժմ արդէն տեղեակ մարդիկ գիտեն, որ Գերմանիան կարող է արշաւել Անգլիա։ Թէ ի՞նչ հետևանքներ կունենայ Գերմանիայի յաղթութիւնը Ռուսաստանի համար, մտածելն անգամ դժուար է։ Հետևանքները սոսկալի կը լինեն։ Ռուսաստանի ներքին զարգացման գործը ի՞նչ դրութեան մէջ կընկնի, երբոր Նեմանի վրայ, Ռիգայում և գուցէ Ռևելում գերմանական ամրոցներ կը կառուցեն, որպէս Մեցը, և այն ոչ թէ տիրած երկիրների պաշտպանութեան համար, այլ յարձակման նպատակով։

*) Տես «Համբաւաբեր» № 17։

Այս այն ամրոցները կը լինեն, որտեղից պատերազմի յայտարարութեան հենց առաջին օրը կարող կը լինեն շարժուել իրենց թնդանօթաձիգներով (արտիլերիայով) երկու հարիւր հազար զինուոր Պետրոգրադ գնալու։

Առհասարակ Գերմանիայի յաղթութիւնը այս պատերազմում կը նշանակի ամբողջ Եւրոպայի կուլտուրայի ստրկացում Գերմանիայի զինուորական տիրապետութեան տակ։ Նրա յաղթութիւնը 1870 թուին տուեց մեզ քառասուն տարուան ստրկացում և ընդհանուր զարգացման ընդհատում։ Այժմ Գերմանիայի յաղթութիւնը Անգլիայի, Ֆրանսիայի, Ռուսիայի և Բելգիայի դէմ մի կէս դար, եթէ ոչ աւելի, պիտի կանգնեցնի նրանց զարգացումը, որի տակ կ՚ընկնեն և ամբողջ արեւմտեան երկիրները ու սլաւոնական աշխարհը։

Էլ չեմ խօսում այն վայրենի ձևերի մասին, որով արտայայտւում է խրոխտացող գերմանականութիւնը։ Միայն անխախտելի փաստերով ապացուցուած գազանութիւնները, որ կատարում են գերմանացիք, անցնում են մինչև այսօր լսուած ամեն տեսակ գազանութիւնների չափը. և մի մոռանաք, որ Բելգիայի ծերունու, երեխայի և խաղաղ ժողովրդի վրայ գազանութիւն կատարող գերմանացի զինուորը համոզուած է, որ ոչ թէ նա ինքն է մեղաւորը, այլ որ իբր պատժում է ապստամբներին, և ոչ թէ իրենց ազատութեան պաշտպանութեան համար զոհուող բելգիացիներին։ Եւ սոսկալին այն է, որ ամբողջ լուսաւոր Եւրոպայում զզուանք յարուցանող բռնութիւնները պաշտպանութիւն են գտնում գերմանական ծայրայեղ կուսակցութեան —սոցիալ-դեմոկրատիայի կողմից։ Գերմանիայից դուրս բոլոր պրոլետարիատը լաւ է հասկանում թէ ինչ խայտառակ դրոշմ է դնում այս պատերազմը գերման ժողովրդի ճակատին և ցանկանում է Գերմանիայի պարտութիւնը։ Չի կարելի չցանկանալ Գերմանիայի պարտութիւնը, որովհետև նա մտցրել է մեր կեանքում զինուորականութեան լոզունգ, չի կարելի նոյնիսկ չէզոք մնալ, որովհետև դա կը նշանակի նպաստել երկաթէ բռունցքին։ Այս շատ լաւ հասկանում են բոլորը և ձայնակցում, որ դաշնակիցները պիտի յաղթեն, որ այս պատերազմը կը լինի եւրոպական վերջին պատերազմը։ Բոլորն ասում են, թէ բոլոր ազգերի համար ազատ զարգացման իրաւունքը պիտի սրբագործուի, ասում են, որ Եւրոպայի քարտէզի նոր բաժանման ժամանակ դաշնակցական սկզբունքը պիտի լայն գործադրութիւն ունենայ։ Պատերազմի այլանդակութիւնը և զինուած խաղաղութիւն անուանեալ սկզբունքի անզօրութիւնն այնքան ակնյայտնի են, որ հասել է ժամը ընդհանուր զինաթափութեան։ Առաջաւոր ազգերի ներքին դաշնակցութիւնը կարևոր է դառնում և ազգերի վրայ խոր հետևանք կը թողնի, որովհետև ընդհանուր վտանգը երևան գալու օրից ազգերի ուժերի լարումը ծայրայեղ դարձաւ։ Ազգերի համերաշխութիւը արդէն հիմք է դնում նոր, բոլոր խաւերի միացած կեանքի համար, այն խաւերի, որոնցից ստեղծւում են ազգերը։

Արեւմտեան Եւրոպայում ծագում են արդէն ահա այս գաղափարները, որոնք ճշմարիտ են և պիտի յաղթանակեն։

Գ. ԵՆԳԻԲԱՐԵԱՆ

(Կը շարունակուի)

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

Մենք յաճախ մատնանշել ենք Բոստոնի «Christian Science Monitor» ամերիկեան թերթի հայկական դատի նկատմամբ ջերմ համակրութիւնը։

Ամերիկան, չէզոք պետութեան իր հանգամանքով, կարողացել էր ուղղակի տեղեկութիւններ ստանալ իր հպատակներից, առանձնապէս միսիոնարներից, որոնցից շատերը դեռ ևս գտնւում են դաշնակիցների համար անմատչելի մնացած գաւառներում։ Մենք յաւէտ երախտապարտ պիտի լինենք այն ամերիկեան քաղաքացիներին՝ ոչ միայն այն տեղեկութիւնների համար, որոնք կարող են ստացուել նրանցից, այլ և հայ փախստականներին նրանց կողմից հասցուած իրական օգնութեան համար։

«Քաղաքակրթութիւնը, գրում է այդ թերթը, ակներև է, որ իւր վերջին խօսքն ասեց Արևելքում, և քրիստոնէութեան 19-րդ դարու յարակցական արդիւնքներն արհամարհեցին Թիւրքիայի անվրդով վճռականութեան առաջ՝ աշխարհի մէջ մտցնելու նախորդ դարերի մեթոդները։

«Հայկական կոտորածների մանրամասները յայտնի են աշխարհի բոլոր կառավարութիւններին, թէ չէզոքներին և թէ պատերազմողներին. բայց նրանցից ոչ մէկը չէ յայտարարում այդ։ Պատերազմողները կարող են պատճառաբանել, որ ինչ էլ ասեն, իրենց ձայնը կը մնայ «ձայն բարբառոյ յանապատի»։ Իսկ չէզոքները կարող են ասել հետևեալը. դիւանագիտութեան փափկանկատ մատնանշումները Բ. Դրան՝ բացարձակապէս անօգուտ և միայն ժամանակի կորուստ են. միայն վճռական գործելակերպը կարող է փրկել Հայաստանի մնացորդը։ Անհրաժեշտ չէ անդրադառնալ սարսափներին, որոնք տեղի ունեցան Տրապիզոնում և Էրզրումում։ Հայերի նամակներն ու նրանց խոստովանութիւնները, չնայած հալածիչների ձեռք առած բոլոր նախազգուշութիւններին, ամբողջ աշխարհին իմացրին իրողութիւնը, չէզոք միսիոնարների տեղեկագրերը լրացրին կրօնի և քաղաքական հալածանքի այդ վերջին մոլեռանդ թափը։ Որ այդ հալածանքն եղաւ նոյնքան քաղաքական, ինչքան կրօնական հողի վրայ—կարող ենք կատարելապէս և առանց վարանման հաւատալ, և պէտք է աւելացնենք, որ քաղաքական ու տնտեսական կիրքերը, որոնք ծնունդ տուին հալածանքներին, նոյնքան անարդարանալի են, որքան կրօնական կիրքերը։

«Իսլամի քաղաքականութիւնը միևնոյն արդիւնքն ունեցաւ Բալկաններում, ինչ որ հաւատաքննական ատեանները Սպանիայում։ Ով որ կարողացաւ փախչել, ազատուեց. ովքեր չկարողացան, ընդունեցին Իսլամի կրօնը՝ իւր բոլոր աղէտալի հետևանքներով։

«Օսմանեան կայսրութեան քրիստոնեաների մէջն՝ ծովեզրի յոյները, Լիբանանի մարոնիտներն որոշ չափով ազատութիւն վայելեցին։ Բայց հայերը, թէ Սև ծովի ափին, թէ երկրի ներսում ոչնչով չէին կարող պաշտպանուել։ Թալանը, հարեմներում բանտարկութիւններն ու բռնաբարութիւնները, մարգարէի անունով տղամարդկանց կոտորուելը անխուսափելի միջադէպեր էին, երբ թիւրքերը բռնկուեցին։

«Աղէտից յետոյ երբ երկինքը պարզուեց, մնացել էր միայն հայ ժողովրդի մի բեկորը, որին քիւրդ ձիաւորներն ու արաբ զինուորները քշեցին դէպի Միջագետքի անապատները։ Ամբողջ աշխարհը գիտէ թէ ինչե՜ր եկան այդ թշուառ աքսորականների գլխին, որոնք իրենց հայրենի օջախներից վանուելով կենդանիների հօտի նման՝ կոտորուեցին իրենց առաջնորդող պահակների ձեռքով, ամենավրդովեցուցիչ նախատինքներին ենթարկուեցին։

«Այդ անապատներն իսկ ոչ մի րոպէի համար ապաստարան չհանդիսացան հայերի մնացորդներին. միայն Հալէպից հարաւ տեղահանուածները մի որոշ ապահով վիճակ ունեցան։ Այժմ, լուրերի համաձայն, նրանք, ըստ երևոյթին, դարձեալ տեղահանուել են, ինչ որ նախորդ տեղահանութիւնների համանման արդիւնք կը տայ»։

Պոլսի և Թիւրք կառավարութեան նախամտածուած այս արարքների պատասխանատուութիւնն ապացուցելով՝ թերթը եզրափակում է ասելով, որ Բարձրագոյն Դուռն այնպիսի մի տեղ ուղարկեց կոտորածներից վերապրողներին, որ այլ ևս նրանք չկարողանան միանալ իրենց ազգին։ Բայց այդ ծրագիրը մասամբ չհասաւ իւր նպատակին, քանի որ ռուսական զօրամասերի արագ առաջխաղացութեամբ պաշտպանուեց նահանջը հայ ժողովրդի մի մասը, որ կը վերապրի վերականգնելու համար նախկին դրութիւնը։

# ԳԻՏԱԿԱՆ

## ԳԱԶԱՄԱՐՏԸ

Ոչ միայն մասնաւոր մարդիկ, այլև շատ պետութիւններ դեռ վաղուց զբաղուած են եղել պայթուցիկ նիւթեր պատրաստելու խնդրով, բայց միայն գերմանացին է, որ ուրիշ սատանայական հնարների հետ միասին ուսումնասիրել է գազամարտի տեխնիկան, և ներկայ պատերազմի սկզբում թունաւոր գազերով կռիւը իւր կատարելագործութեամբ և պատճառած աղէտներով գրեթէ նորութիւն էր դաշնակիցների համար։ Զարմանալի չէ ուրեմն թունաւոր գազերի թշնամուն պատճառած վարանմունքը՝ 42 սանտիմետրանոց թնդանօթների հետ միացած...

Բոյէրների դէմ մղած կռւում անգլիացիները գործ էին ածում այնպիսի գնդակներ, որոնք պայթելուց յետոյ թունաւոր գազեր էին արձակում։ Նոյնը և ճապոնական գնդացիր-շիմոզների մասին կարելի է ասել։ Սակայն յիշած դէպքերում թունաւոր գազերն արդիւնք են պայթուցիկ նիւթերի այրուելուն, ոչ թէ առաջուանից նպատակ էր դրած թունաւոր գազեր արձակել թըշնամու դէմ։

Բայց և այնպէս ակնյայտնի էր, որ թունաւոր գազերը կարելի է օգտագործել՝ մարդկանց վնասելու համար այս կամ այն ձևով։ Ի զուր չէ, որ այս խնդիրը դեռ 1899 թ. Հաագի համագումարի խօսակցութեան նիւթ դարձաւ և արգիլուեց։

Գերմանիան, որի միտքը առաջուանից ծուռ էր, չընդունեց այս առաջարկը...

Յաջող գազամարտի համար անհրաժեշտ են որոշ յատկութեան գազեր. ա) գազերը այն աստիճանի թունաւոր պիտի լինեն, որ անմիջապէս ազդեն թշնամու վրայ՝ խեղդելով նրան, կամ կռուի անընդունակ դարձնելով։

բ) Գազերը օդից աւելի ծանր պիտի լինեն, որ կարողանան թափանցել խրամատների և այլ փոսերի մէջ, որտեղ պատսպարւում են զինուորները։

գ) Գազերը էժան պիտի լինեն և մեծ քանակով, որպէս զի ազատ կիրառման արգելք չլինի։

դ) Քամու նպաստաւոր ուղղութիւնը և ոյժը։

ե) Օդի խոնաւութեան և ջերմութեան աստիճանը։

զ) Գազեր արձակողի համար փախչելու յարմարութիւն և այլն։

Գազերով թշնամուն վնասելու համար հարկաւոր է մեղմ և միապաղաղ հողմ, ինչպէս սովորաբար լինում է գիշերը և լուսադէմին։ Հենց այս ժամանակ էլ գերմանացիք կիրառում են գազը։ Հասկանալի է, որ նրանք գազամարտին չեն դիմի այն ժամանակ, երբ քամին դէպի իրենց կողմն է փչում։

Անձրևը, շատ խոնաւ և ամպամած եղանակները նոյնպէս նպաստաւոր չեն գազամարտի համար, որովհետև գազերը կլանւում են խոնաւութիւնից։ Սառնամանիքները նոյնպէս, ըստ երևոյթին, արգելք են հանդիսանում գազամարտի յաջողութեան։

Նկատուած է որ —10° (մինուս 10) աւելի ցուրտ եղանակին գազեր չեն արձակում—այն գազերը, որոնք առայժմ մեզ յայտնի են—քլոր և ֆոսգէնն են։

Քլորը մօտ երկու անգամ աւելի ծանր է օդից, դեղին-կանաչ գոյնի, իւրայատուկ հոտով։ Օդի ճնշումից ծանրանում է և հեղուկ դառնում։

Ֆոսգէնը ածխածնի և քլորի միացումն է, աւելի ծանր, զզուելի և խեղդող հոտով։

Գազամարտի համար գերմանացիները քլորը և ֆոսգէնը գործ են ածում ոչ թէ միայն նրանց թունաւոր յատկութիւնների պատճառով, այլ որ շատ էժան են և մեծ քանակով կայ Գերմանիայում։ Գործարաններում կտորներ ներկելու համար գործ են ածում յիշած գազերը և այս պատճառով նրանց թունաւոր յատկութիւնը վաղուց յայտնի է գերմանացիներին։

Ռուսաստանում ֆոսգէն բոլորովին չկայ, իսկ քլոր՝ սակաւ, և ճոթեղէն սպիտակացնում են ոչ թէ քլորով, ինչպէս Գերմանիայում, այլ քլորակրով։

Պատերազմի համար գերմանացիք յիշուած գազերը գործ են ածում խտացրած դրութեամբ (հեղուկ) պահելով պողպատէ գնդակների մէջ, որոնք միանում են իրար հետ մի ընդհանուր խողովակով։ Ռազմական նպատակով հարկաւոր քանակով գազեր արձակելու համար անհրաժեշտ է ամեն մի կիլոմետր տարածութեան 500 պուդ գազ և այն էլ ամենակարճ ժամանակամիջոցում, այլապէս գազերը շատ շուտ կը նօսրանան և ցանկալի ազդեցութիւնը չեն գործի։

Գազերը աստիճանաբար տարածուելով՝ կատարում են իրենց նողկալի դերը..

Օդից աւելի ծանր լինելով, թափանցում են խրամատների և այլ փոսերի մէջ ու երկար մնում այնտեղ։ Եղել են դէպքեր, երբ գազեր արձակելուց երեք օր յետոյ նոր զօրքեր են գրաւել խրամատները և թունաւորման վտանգին ենթարկուել։

Յաջող պայմաններում գազերը թունաւոր են արձակած տեղից 2—3 վերստ հեռու, իսկ նրանց ներկայութիւնը զգալի է նոյնիսկ 10—15 վերստ հեռաւորութեան վրայ։ Բայց որքան աւելի են տարածւում գազերը, այնքան աւելի նրանք նօսրանում և աւելի պակաս թունաւոր են դառնում։

ԲԺ. ԱԻ. ՏԷՐ-ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Ձեր շաբաթաթերթի № 14-ում, էջ 335, Երևանի նահանգապետ Ստրելբեցկու կալանաւորման առթիւ իմ մասին ասուած է. «Պատմում են, որ Ստրելբեցկու տան կայքը առանց ցուցակի և Երևանի գործադիր կոմիտէից գաղտնի յանձնեցին Ստրելբեցկու բարեկամ Խրիզոնոպուլօ խորհրդականին...»։ Իսկապէս պետական գոյքը, ըստ կարգադրութեան նահանգական կոմիսար Խաչատրեանի, ընդունուել է առանձին մասնաժողովի կողմից ցուցակով, իսկ նահանգապետ Ստրելբեցկու սեփական իրերը առաջարկուեց անմիջապէս դուրս հանել պետական շէնքից, որովհետև այն սենեակը, որտեղ պահուած էին իրերը, հարկաւոր էր կոմիսարութեան անդամներին։ Ամեն ինչ կատարւում էր «ոչ թէ գաղտնի», այլ ընդհակառակը բոլորովին աշկարայ. երբ իրերը, որոնք գըտնւում էին կոմիսարութեան զիւանատան կից սենեակում և այդ տեղով էլ փոխադրւում էին ներկայութեամբ կոմիտէի շատ անդամների, և այս իրերի ցուցակը նոյնպէս կազմուել է։

Հեղինակը չպէտք է սխալ լուրեր զետեղէր մամուլի մէջ, մանաւանդ, ինչպէս ասում են, հեղինակը ինքը՝ «Գ. Ե.» անդամ է Երևանի նահանգական գործադիր յանձնաժողովի։

Խորհրդական Երևանի նահանգ. կառավար.
ԽՐԻԶՈՆՈՊՈՒԼՕ

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1